



# ԼԵՆԻՆԸ ՀԱՎԵՐԺ ԱՊՐՈՒՄ Է

(Վ. Ի. Լենինի ծննդյան 91-րդ տարեդարձի առթիվ)

*Երախտապարտ Սովետական ժողովուրդը և աշխարհի բոլոր ազատասեր ժողովուրդները ապրիլի 22-ին կնշեն Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հիմնադիր, ռևոլյուցիայի հանճար, ամբողջ աշխարհի աշխատավորների մեծ ուսուցիչ և առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան օրը։ Պատմությունը քիչ պանծալի անուններ չգիտի, որոնք ապրել են դարերով։ Սակայն Լենինի անունն անմահ է, նրա փառապանծ կյանքը, ռևոլյուցիոն գործունեությունը աշխատավոր մարդկության անձնվիրաբար ծառայելու ու ժողովրդի շահերի, նրա երջանկության համար պայքարելու ոգեշունչ օրինակ է։*

*Սովետական ժողովուրդն իրավամբ հպարտանում է, որ մեր երկիրը համարվում է լենինիզմի հայրենիքը, որ նա աշխարհին,*

մարդկությանը տվել է այն հանճարեղ մարդուն, որի ուսմունքի, գաղափարների մեջ ամբողջ խորությամբ և հստակորեն արտահայտված են կապիտալիստական հասարակությունը ռևոլյուցիոն ճանապարհով վերափոխելու և կոմունիստական հասարակություն ստեղծելու, մարդու կողմից մարդու շահագործումը, պատերազմը, ազգային և գաղութային ճնշումը վերացնելու, գիտության և կուլտուրայի նվաճումները ժողովրդի բարօրությանը ծառայեցնելու, մարդկային անհատների բազմակողմանի զարգացումն ապահովելու պահանջները։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը մեր երկրում, համաշխարհային սոցիալիստական սիստեմի ստեղծումը, նրա հզորության և միջազգային ազդեցության շեշտակի աճը, ազգային-ազատագրական շարժման հարվածների տակ գաղութային սիստեմի քայքայման պրոցեսը, համաշխարհային կապիտալիստական սիստեմի հետագա անկումն ու քայքայումը, խաղաղության, դեմոկրատիայի ուժերի ամրապնդումը լենինիզմի կենսահաստատ գաղափարների խոշորագույն հաղթանակներն են,







նրանց ճշմարտացիության, կենսունակության փայլուն արտահայտությունը։

Վ. Ի. Լենինի պատմական մեծագույն ծառայությունն այն է, որ նա պատմական նոր պայմաններում ստեղծագործաբար զարգացրեց մարքսիզմը, այն հարստացրեց նոր դրույթներով ու եզրակացություններով։

Վ. Ի. Լենինը ճշմարտացի և կոնկրետ պատասխաններ տվեց դարաշրջանի առաջադրած բոլոր խնդիրներին, մարդկությանը հուզող ամենակենսական հարցերին։

Հասարակական զարգացման օրինաչափությունների խոր վերլուծման և համաշխարհային ազատագրական շարժման բազմահարուստ փորձի համակողմանի հաշվառման հիման վրա Վ. Ի. Լենինը մշակեց ուսմունք՝ մեկ առանձին վերցրած երկրում սոցիալիզմի կառուցման հնարավորության մասին, հայտնագործեց Սովետական իշխանությունը որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձև՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու շրջանում, մշակեց սոցիալիստական վերափոխությունների, կոմունիզմի կառուցման ուղիների հարցը։

Վ. Ի. Լենինը բոլորից լավ էր հասկանում, որ 19-րդ և 20-րդ դարերի սահմանագլխին պատմությունը ռուսական երիտասարդ պրո-

լետարիատի առջև դրել է այնպիսի ռևոլյուցիոն խնդիր, որպիսին երբեք չէր դրվել մյուս երկրների պրոլետարիատի առջև։ Այդ խնդրի իրականացումը՝ եվրոպական և ասիական ռեակցիայի պատվար ցարիզմի տապալումը ռուսական պրոլետարիատին կդարձներ միջազգային բանվորական և ռևոլյուցիոն շարժման ավանգարդը։ Ռուսական պրոլետարիատը կարող էր իրականացնել իր պատմական միսիան՝ ունենալով փորձված, մարտերում կոփված նոր տիպի ռևոլյուցիոն մարքսիստական պարտիա։

Լենինն ստեղծեց այդ պարտիան, բանվոր դասակարգի նոր տիպի պարտիան՝ կոմունիստական պարտիան, մշակեց նրա գաղափարական-կազմակերպական, տակտիկական և տեսական հիմքերը, պարտիական կյանքի նորմաները և կոլեկտիվ ղեկավարման սկզբունքները, իր հանճարի լույսով լուսավորեց սոցիալական ու ազգային ճնշման դեմ ընդվզող միլիոնավոր աշխատավորների պայքարի ուղին։

Կոմունիստական պարտիան, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, Ռուսաստանի ժողովուրդներին առաջնորդեց դեպի սոցիալիստական ռևոլյուցիան և 1917 թվականի հոկտեմբերին տապալեց կալվածատերերի ու կապիտա-



լիստների տիրապետությունը և հաստատեց Սովետական իշխանություն։ Բանվորների ու գյուղացիների՝ աշխարհում առաջին Սոցիալիստական պետության նախագահ ընտրվեց Վ. Ի. Լենինը։

Լենինին չվիճակվեց երկար ապրել և աշխատել մեզ հետ միասին, տեսնել մեր կյանքի հերոսապատումը, մեր սոցիալիստական այսօրը, էլ ավելի հոյակապ կոմունիստական վաղը, բայց նրա հանճարը թափանցել էր հասարակական կյանքի խորքերը, կանխատեսել պատմության ընթացքը, նշել սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ճշգրիտ ուղիները։

Լենինի առաջադրած տեսական դրույթները լուսավորում են դեպի կոմունիզմ մեր առաջընթացի ուղին ամբողջ տասնամյակների համար։ Եվ այսօր էլ, ինչպես միշտ, երբ մեր պարտիային անհրաժեշտ է լինում լուծել այս կամ այն խնդիրը, պետական, տընտեսական շինարարության բազմաթիվ հարցեր, դիմում է լենինյան ժառանգության անսպառ գանձարանին, որտեղ գտնում է արդիականության բոլոր հարցերի վերաբերյալ լենինյան ճշմարտացի, կոնկրետ պատասխանները։

Կոմունիզմի մեծ ճարտարապետ Վ. Ի.

Լենինի մեծագույն ծառայություններից մեկն էլ այն է, որ նա մշակեց մեր երկրում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գիտականորեն հիմնավորված ծրագիրը, որի բաղկացուցիչ մասերն են՝ երկրի սոցիալիստական ինդուստրացումը և ամենից առաջ ծանր արդյունաբերության զարգացումը, երկրի էլեկտրիֆիկացումը, սոցիալիստական հիմունքներով գյուղատնտեսության վերափոխումը, կուլտուրական ռևոլյուցիայի իրականացումը։ Դեռևս 1918 թվականի մարտին Լենինն ասել է. «Մենք մատերիալ ունենք թե՛ բնական հարստություններով, թե՛ մարդկային ուժերի պաշարով, թե՛ այն հիանալի թափով, որ տվեց ժողովրդական ստեղծագործությանը մեծ ռևոլյուցիան,— որպեսզի կարողանանք ստեղծել իրոք հզոր և լիառատ Ռուսիա»։

Մեծ Լենինը երազում էր մեր երկիրը տեսնել որպես աշխարհի հզոր սոցիալիստական տերություն։ Իր վերջին ճառում նա լիակատար վստահությամբ հայտարարել է, որ նէպական Ռուսաստանը կդառնա սոցիալիստական։

Վ. Ի. Լենինի մահից հետո Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի առջև համաշխարհային պատմական նշանա-



կություն ունեցող խնդիր դրվեց՝ ամրապնդել Սովետական պետությունը, պաշտպանել մեծ Հոկտեմբերի նվաճումները, համախմբվել լենինյան պատգամների շուրջը, ընթանալ լենինյան ուղիով՝ սոցիալիզմի կառուցման ուղիով, Լենինի գործը հասցնել մինչև վերջ։ Եթե Լենինը կարողանար ոտքի կանգնել և նայել իր շուրջը, ապա նրա աչքերի առջև կկանգներ սոցիալիզմի հզոր ու վերափոխված երկիրը։ Նա կտեսներ, թե ինչպես այն, ինչով ինքն ապրում ու շնչում էր, ինչ պլանավորում էր, այսօր մեր ժողովուրդը, Կոմունիստական պարտիան հաջողությամբ կենսագործել են։ Որքա՜ն կուրախանար մեծ առաջնորդը, երբ տեսներ, թե ինչպես ծանր ինդուստրիայի զարգացման վերաբերյալ լենինյան կանխագծումների իրականացման շնորհիվ մեր երկիրը դարձել է աշխարհի ամենահզոր ինդուստրիալ տերություններից մեկը։ 1913 թվականի համեմատությամբ մեր երկրում արդյունաբերության համախառն արտադրանքը 1959 թվականին աճել էր ավելի քան 40 անգամ, արտադրության միջոցների արտադրությունը՝ 93 անգամ, իսկ մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքն՝ ավելի քան 270 անգամ։ Արդյունաբերական արտա-

դրության ծավալով Սովետական Միությունը Եվրոպայում գրավում է առաջին, իսկ աշխարհում՝ երկրորդ տեղը։ Մեզ մոտ յուրաքանչյուր 9 օրում ավելի շատ արդյունաբերական արտադրանք է թողարկվում, քան նախառևոլյուցիոն Ռուսաստանը արտադրել է մի ամբողջ տարում։ Միայն յոթնամյակի երկու տարում պլանից դուրս արտադրվել է 11 միլիարդ 300 միլիոն ռուբլու (նոր դրամով) արտադրանք։ Սովետական ժողովուրդը հաջողությամբ իրագործում է «Կոմունիզմը դա սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան» լենինյան ֆորմուլան։ Բավական է նշել, որ միայն 1959 թվականին մեր երկրում արտադրվել է 264 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որը 102 անգամ ավելի է էլեկտրաէներգիայի 1916 թվականի արտադրանքից, իսկ Վոլգայի հիդրոկայանը տարեկան 5 անգամ ավելի էներգիա է տալիս, քան Ռուսաստանի բոլոր էլեկտրակայանները տվել են ամբողջ 1913 թվականին, 1960 թվականի առաջին կիսամյակում արտադրված էլեկտրաէներգիայի աճը հավասար էր ԳՈԷԼՌՈ-ի երկու պլանի, իսկ յոթնամյակում 35 անգամ ավելի էներգետիկ կարողություն կարտադրվի, քան նախատեսված էր ԳՈԷԼՌՈ-ի



պլանով։ Մեր երկիրը աշխարհում առաջին տեղն է գրավում աշխատանքի արտադրողականության աճման տեմպերով, իսկ վերջինս Լենինը համարում էր ամենակարևորը, ամենագլխավորը նոր հասարակարգի հաղթանակի համար։ Բավական է նշել, որ յոթնամյակի վերջում աշխատանքի արտադրողականության աճման հաշվին մեզ մոտ կստացվի ամբողջ արդյունաբերական արտադրանքի 75 տոկոսը։

Հետևելով լենինյան ցուցումներին, պարտիան հաջողությամբ լուծեց սոցիալիստական շինարարության ամենադժվար խնդիրը՝ գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման խնդիրը։ Իրականացնելով լենինյան կոոպերատիվ պլանը, հենվելով բանվոր դասակարգի և գյուղացիության հիմնական մասսաների աջակցության վրա, պարտիան ապահովեց մանր անհատական գյուղացիական տնտեսությունների անցումը խոշոր, կոլեկտիվ տնտեսությունների։ Գյուղում սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ արմատապես փոխվեց գյուղացու կյանքն ու կենցաղը, նա մտավ սոցիալիզմ և կոմունիզմ կառուցողների բանակը։ Կոլտնտեսային կարգի հաղթանակը գյուղացիությունն ընդմիշտ փրկեց կուլակային շահագործումից,

ամրապնդեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, գյուղի աշխատավորության առջև լայնորեն բացեց ունևոր և կուլտուրական կյանքի ուղին։

ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումից հետո անցած ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի ուղղությամբ մեր պարտիայի կատարած մեծ աշխատանքի շնորհիվ զգալիորեն ավելացել են գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրությունը և պետական գնումները։

1960 թվականին, չնայած երկրի առանձին շրջաններում եղանակի անբարենպաստ պայմաններին, ավելի շատ հացահատիկ, շաքարի ճակնդեղ, ձիթատու կուլտուրաներ, բանջարեղեն արտադրվեց, ավելի շատ միս, կաթ, ձու գնվեց, քան 1959 թվականին։ 1960 թվականին արտադրվեց 8 միլիարդ 131 միլիոն փութ հացահատիկ, 61,5 միլիոն տոննա կաթ, 848 հազար տոննա յուղ։

1953 թվականի համեմատությամբ մսի արտադրությունն ավելացավ 50 տոկոսով, կաթինը՝ 68, ձվինը՝ 64, բրդինը՝ 51 տոկոսով։

Սակայն գյուղատնտեսական մթերքների և առանձնապես անասնաբուծական մթերքների արտադրության աճի ձեռք բերված մա-



կարդակն ու տեմպերը չեն համապատասխանում բնակչության հարաճուն պահանջարկին։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը, (1961 թ.) համակողմանիորեն քննարկելով գյուղատնտեսության գործերի վիճակը, բացահայտեց նրա անսպառ հնարավորությունները, մերկացրեց կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարման թերությունները, հստակորեն մշակեց գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի հետագա զարգացման կոնկրետ ծրագիր։

Պլենումը նշեց, որ ներկայումս մենք կարող ենք առանց վնաս հասցնելու արդյունաբերության հետագա զարգացմանն ու պաշտպանական հզորության ամրապնդմանը, ավելի շատ միջոցներ հատկացնել ժողովրդի բարեկեցության բարձրացման հետ կապված ճյուղերի զարգացման համար։ Դրա նպատակն է ստեղծել այնպիսի պայմաններ, որոնք հնարավորություն տան գյուղատնտեսությունը վարելու այնպես, որ նա կախում չունենա բնության քմահաճույքներից, ամեն տարի, կլիմայական բոլոր պայմաններում, երաշխավորի ժողովրդի պահանջմունքների լրիվ բավարարման համար երկրին անհրաժեշտ մթերքներ ստանալը։ «Ուստի գյու-

ղատնտեսության զարգացման հարցերը,— պլենումում ասաց Ն. Ս. Խրուշչովը,— պետք է լինեն մեր պարտիայի ուշադրության կենտրոնում։ Առանց լավ զարգացած գյուղատրնտեսության, առանց գյուղատնտեսական մթերքների առատության ծաղկող սոցիալիստական էկոնոմիկա լինել չի կարող։ Գյուղատնտեսության անշեղ վերելքի համար պայքարը կոմունիստական հասարակարգի կառուցման կարևորագույն պայմանն է։ Դա հիրավի համաժողովրդական գործ է»։

Պլենումի որոշումներում վառ կերպով երևան եկավ կոմունիստական պարտիայի անդուլ հոգատարությունը աշխատավորների բարեկեցության նկատմամբ, նրա ձգտումը՝ սովետական ժողովրդի կյանքը դարձնել ավելի գեղեցիկ ու բերկրալի, կարճ ժամանակում ապահովել սովետական մարդկանց հարաճուն պահանջների լրիվ բավարարման համար անհրաժեշտ մթերքների առատություն։

Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հիման վրա անշեղորեն բարելավվում է աշխատավորության նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։

Մեր երկրում անցած տարի ավարտվեց բո-



լոր բանվոր-ծառայողների փոխադրումը յոթժամյա և վեցժամյա աշխատանքային օրվա։ Պատմության մեջ առաջին անգամ ընդունվեց և իրագործվում է բնակչությունից գանձվող հարկերի վերացման օրենքը։ Վերջին երկու տարում քաղաքների աշխատավորներն ստացել են 165 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն կամ 4 միլիոն 600 հազար բնակարան, իսկ գյուղական վայրերում կառուցվել է ավելի քան 1 միլիոն 400 հազար տուն։

Նոր հասարակարգի հաղթանակի անհրաժեշտ պայմանը Լենինը համարում էր կուլտուրական ռևոլյուցիայի իրականացումը։

Ղեկավարվելով Լենինի ցուցումներով, Կոմունիստական պարտիան իրականացրեց իսկական կուլտուրական ռևոլյուցիա։ ՍՍՌՄ-ը վերածվեց համատարած գրագիտության երկրի։ Մեզ մոտ չկա ոչ մի ռեսպուբլիկա, ազգային օկրուգ, որը մայրենի լեզվով չունենա դպրոցների, կուլտուր-լուսավորական հիմնարկների լայն ցանց։

Այժմ ՍՍՌՄ-ում ուսուցման բոլոր ձևերի մեջ ընդգրկված է ավելի քան 57 միլիոն մարդ, այլ կերպ ասած՝ սովետական յուրաքանչյուր 4 մարդուց մեկը սովորում է։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ

ներկայումս աշխատում են մոտ 8 միլիոն բարձրորակ մասնագետներ։ Նախառևոլյուցիոն Ռուսաստանում եղած 13 հազար գիտաշխատողների փոխարեն այժմ մենք ունենք ավելի քան 310 հազար գիտաշխատող։

Ամբողջ աշխարհը հիացած է միջուկային ֆիզիկայի և ատոմային էներգետիկայի, ռեակտիվ ավիացիայի և հրթիռային տեխնիկայի բնագավառում սովետական գիտնականների հաջողություններով։ Սովետական ժողովուրդը առաջինը թափանցեց Տիեզերքը։ Երկրի արհեստական արբանյակները, տիեզերանավերը, Լուսնի վրա սովետական վիմպելը, միջմոլորակային ավտոմատ կայանը, որն այժմ սլանում է դեպի Վեներա, սովետական գիտության ու տեխնիկայի փայլուն հաղթանակներն են, որոնք ուղեծիր դուրս բերեցին լենինիզմի փառքը։

Վերջերս մենք արձակեցինք հինգերորդ արբանյականավը, որը, կատարելով նախատեսված ծրագիրը, նույն օրը վայրէջք կատարեց Սովետական Միության վաղորոք նախատեսված շրջանում։ Հեռու չէ այն ժամանակը, երբ տիեզերական երթի կմեկնի մարդը, կոմունիզմ կառուցող սովետական մարդը։



Վ. Ի. Լենինը ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության ստեղծողն ու ոգեշնչողն է։ Լենինը բոցաշունչ ինտերնացիոնալիստ էր, նրան խորթ էր ազգային սահմանափակվածությունը, նրա սիրտը միանման ջերմությամբ էր բաբախում բոլոր աշխատավորների և ճնշվողների նկատմամբ։ Նրան նույնքան մոտիկ և հասկանալի էր ինչպես ռուսական, այնպես էլ չինական, հնդկական, ֆրանսիական ու ճապոնական բանվորի և գյուղացու հոգին։ Լենինյան ազգային քաղաքականության, մեծ Լենինի պատգամների հետևողական ու անշեղ կենսագործման շնորհիվ Սովետական իշխանության տարիներին բոլոր ռեսպուբլիկաներում ստեղծվեց ժամանակակից արդյունաբերություն, ծնունդ առան սեփական ազգային կադրեր, ծաղկեց բոլոր ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Պարտիան ժողովուրդների բարեկամությունը դիտում է որպես Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մեծագույն նվաճումը, բազմազգ Սովետական պետության բոլոր հաջողությունների գլխավոր պայմանը և ան-

գուլ հոգատարություն է ցուցաբերում նրա ամրապնդման նկատմամբ։ Դրա փայլուն վկայությունն են պարտիայի XX համագումարի որոշումների հիման վրա միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնման ուղղությամբ ձեռնարկված կարևոր միջոցառումները, որոնք նպաստեցին մասսաների նախաձեռնության և ստեղծագործական ակտիվության բարձրացմանը, բոլոր ռեսպուբլիկաների էկոնոմիկայի և կուլտուրայի ծաղկմանը, նրանց միջև բարեկամության և համագործակցության ամրապնդմանը։

Սովետական պետության ուժի և հզորության աղբյուրը Լենինը տեսնում էր աշխատավոր մասսաների ստեղծագործական ակտիվության և ռևոլյուցիոն էներգիայի ծավալման մեջ, բանվոր դասակարգի և գյուղացիության անխախտ դաշինքի ու ժողովուրդների բարեկամության ամրապնդման մեջ։

Սրբությամբ հետևելով լենինյան պատգամներին, Կոմունիստական պարտիան անդադար ամրապնդում է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, ժողովուրդների բարեկամությունը, զարգացնում է սոցիալիստական դեմոկրատիան, ստեղծում է բոլոր







պայմանները աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության և ակտիվության հետագա բարձրացման, նրանց պետության կառավարման մեջ ավելի ու ավելի լայն կերպով ներգրավելու համար։

Լենինիզմը աճել է ռևիզիոնիզմի, դոգմատիզմի և աղանդավորականության դեմ մղված անհաշտ պայքարում։ Լենինի բոլոր աշխատությունները ներթափանցված են բուրժուական և ռևիզիոնիստական թեորիաների դեմ անհաշտ պայքարի ոգով։ Հետևելով Լենինի փառապանծ մարտական տրադիցիաներին, Կոմունիստական պարտիան սրբությամբ է պահպանում մարքսիզմ-լենինիզմի անաղարտությունը, յուրաքանչյուր կոմունիստից պահանջում է անդուլ կերպով տիրապետել լենինիզմին և հետևողականորեն պայքարել լենինյան գաղափարները կենսագործելու համար, դաստիարակել մասսաներին կոմունիստական բարձր գիտակցականության, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։

Կոմունիստական շինարարության պլաններում Վ. Ի. Լենինը վճռական նշանակություն էր տալիս Կոմունիստական պարտիայի ղեկավար դերին, աշխատավորների լայն մասսաների հետ նրա կապերի ամրապնդմանը,

պարտիական կյանքի նորմաների և կոլեկտիվ ղեկավարության սկզբունքների հետևողական իրականացմանը։

Լենինը սովորեցնում էր, որ առանց ռևոլյուցիոն թեորիայով զինված, երկաթե կարգապահությամբ համախմբված, կամքի և գործողությունների միասնությամբ զոդված, ժողովրդի շահերին մինչև վերջ նվիրված պարտիայի ղեկավարության՝ չի կարելի կոմունիզմ կառուցել։

Կոմունիստական պարտիայի ամբողջ գործունեությունը փայլուն հաստատումն է այն բանի, որ ՍՄԿՊ Կենտկոմը, սրբորեն կատարելով մեծ Լենինի ցուցումները, աչքի լույսի պես պահպանում է պարտիայի շարքերի անաղարտությունն ու միասնությունը, որ մեր պարտիան այժմ ավելի, քան երբևէ միաձույլ է ու միասնական, սերտորեն համախմբված լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը։



Լենինիզմը ինտերնացիոնալ մեծ ուսմունք է, նրա գաղափարները հզոր ազդեցություն են թողել համաշխարհային պատմության ամբողջ ընթացքի վրա, նրա հիմնական սկզբունքները կիրառելի են բոլոր երկրների համար։





«Ռուսաստանում ստեղծված սոցիալիստական Սովետական ռեսպուբլիկան,— ասել է Լենինը,— կանգնած կլինի բոլոր երկրների ժողովուրդների առաջ, որպես կենդանի օրինակ, և այդ օրինակի պրոպագանդիստական, ռևոլյուցիոնացնող ներգործությունը հսկայական կլինի»։

Հասարակական զարգացման ամբողջ ընթացքը վերջին տասնամյակներում անհերքելիորեն հաստատում է լենինիզմի գաղափարների կենսահաստատ ուժը և անհաղթելիությունը։ Լենինիզմի դրոշով Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում հաղթանակեց սոցիալիստական ռևոլյուցիան, ստեղծվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որտեղ ապրում է մեկ միլիարդ մարդ, արտադրվում է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեկ երրորդից ավելին, իսկ բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքով արդեն հասել է կապիտալիստական սիստեմին։

Սոցիալիստական լագերը միջազգային սոցիալիստական համերաշխության սերտ կապերով, ընդհանուր շահերի ու նպատակների միասնությամբ միավորված, սոցիալիզմի և կոմունիզմի ուղիով ընթացող ազատ, սուվերեն ժողովուրդների սոցիալական, տնտե-

սական ու քաղաքական համագործակցությունն է։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում կոմունիստական և բանվորական պարտիաները, ստեղծագործաբար կիրառելով սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունները իրենց երկրների յուրահատուկ պայմաններում, դրանով իսկ զարգացնում են մարքսիզմ-լենինիզմը, այն հարստացնում են նոր փորձով։

Վ. Ի. Լենինը, տալով իմպերիալիզմի մարքսիստական խոր անալիզը, որպես կապիտալիզմի բարձրագույն և վերջին ստադիայի, գիտականորեն հիմնավորեց, որ կապիտալիստական սիստեմը պատմության զարգացման օբյեկտիվ օրենքների ուժով գնում է դեպի իր մայրամուտը, որ սոցիալիզմի վերջնական հաղթանակը կապիտալիզմի դեմ համաշխարհային մասշտաբով լիովին և անպայմանորեն ապահովված է։

Եվ իրոք, համաշխարհային սոցիալիստական սիստեմը վերածվում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնի։ Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայի խորհրդակցությունն ընդգծեց, որ արդի դարաշրջանում մարդկային հասարակության զարգացման գլխավոր բովանդակությունը,



գլխավոր ուղղությունը և գլխավոր առանձնահատկությունները որոշում է ոչ թե իմպերիալիզմը, այլ որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, իմպերիալիզմի դեմ, հասարակության սոցիալիստական վերակառուցման համար պայքարող ուժերը։

Իմպերիալիզմի ոչ մի ճիգ չի կարող կանգնեցնել պատմության առաջընթաց զարգացումը։ Ամուր նախադրյալներ են դրվել սոցիալիզմի հետագա վճռական հաղթանակների համար։ Սոցիալիզմի լիակատար հաղթանակն անխուսափելի է։

Այժմ ոչ միայն Սովետական Միությունում, այլև սոցիալիստական մյուս երկրներում վերացված են կապիտալիզմի ռեստավրացիայի սոցիալ-տնտեսական հնարավորությունները։ Սոցիալիստական պետությունների համախմբումը մեկ միասնական լագերում, այդ լագերի օրըստօրե ամրապնդվող քաղաքական և բարոյական միասնությունը ապահովում են ամբողջ սիստեմի շրջանակներում սոցիալիզմի լիակատար հաղթանակը։

Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների փորձը վառ կերպով ցույց է տալիս, որ միայն սոցիալիստական հասարակությունը, ամենաարդարացի և մարդա-

սիրական հասարակությունը կարող է իրագործել աշխատանքի մարդու լիակատար ազատագրությունը, ապահովել նրա ազատությունը և հավասարությունը, ազատել ճընշման, գործազրկության և աղքատության շղթաներից, բոլոր մարդկանց համար ապահովել նրանց ընդունակությունների և տաղանդների աճման, հասարակական և քաղաքական կյանքին ակտիվորեն մասնակցելու անսահման հնարավորություններ։

Լենինի գաղափարների ազդեցության տակ դարավոր նիրհից արթնացան և ազգային-ազատագրական պայքարի ընդհանուր լավայի մեջ ներքաշվեցին գաղութային ու կախյալ երկրների միլիոնավոր մարդիկ։

Ետպատերազմյան 15 տարիներին աշխարհի քարտեզի վրա առաջ են եկել մոտ 40 նոր սուվերեն պետություններ։ Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը մարդկության մոտ $2/3$-ը գաղութային և կիսագաղութային կախման մեջ էր գտնվում։ Այժմ դրեթե ամբողջ Ասիան դեն է նետել գաղութակալության լուծը, արթնացել է բազմաչարչար Աֆրիկան, Լատինական Ամերիկայի երկրներում տապալվում են ամերիկյան իմպերիալիստների կողմից հովանավորվող դիկտատորական ռեժիմները։ Ասիայի, Աֆ-



րիկայի և Լատինական Ամերիկայի ազատագրված ժողովուրդներն սկսել են ակտիվորեն մասնակցել միջազգային քաղաքականությանը։ Գաղութակալության սիստեմը փլուզվում է, նրա լիակատար կրախն անխուսափելի է։

Սովետական Միությունն անշեղորեն առաջնորդվում է հասարակական և քաղաքական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան կուրսով, հետևողական պայքար է մղում խաղաղության և ժողովուրդների անվտանգության ապահովման համար։ Եվ այդ քաղաքականությունը տվել է իր շոշափելի արդյունքները։ Խաղաղության ուժերի վերջին տարիներին ձեռք բերած խոշոր նվաճումները վկայում են, որ հասել է ժամանակը, երբ կարելի է խափանել համաշխարհային պատերազմ սանձազերծելու իմպերիալիստական ագրեսորների փորձերը։ Համաշխարհային սոցիալիստական լագերի, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժման միացյալ ջանքերով, պատերազմի դեմ հանդես եկող բոլոր երկրների և բոլոր խաղաղասեր ուժերի միացյալ ջանքերով համաշխարհային պատերազմը կարելի է կանխել։

Հանձինս Սովետական Միության, սոցիալիստական լագերի երկրների, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման՝ ամբողջ աշխարհի աշխատավորները տեսնում են խաղաղության ամրապնդման հետևողական պաշտպաններին, ջերմորեն հավանություն են տալիս ընդհանուր և լրիվ զինաթափման, գաղութային ամոթալի սիստեմի վերացման մասին մեր առաջարկներին։ Իսկ այս ամենը նոր ուժ է տալիս, վստահություն ներշնչում խաղաղության միլիոնավոր մարտիկներին։

Լենինի անունը դարձել է ամբողջ աշխարհի աշխատավորների դրոշը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարում։



Վ. Ի. Լենինի ժամանակակիցները, որոնց բախտ է վիճակվել մոտիկից իմանալ Իլյիչին, նշում են, որ նրա անձնավորությունը ապագա կոմունիստական մարդու նախատիպն էր։ Նրա մեջ զուգորդվում էր մեծագույն խորաթափանցությունը և իմաստությունը, պարզությունն ու համեստությունը, անսահման հոգատարությունը և ուշադրությունը ընկերների, մարդկանց, երեխաների նկատ-



մամբ, անսահման նվիրվածությունը պարտիայի, բանվոր դասակարգի գործին։

Վ. Ի. Լենինը Կոմունիստական պարտիայի մեծ առաջնորդն է, նրա ամբողջ կյանքը անբաժանելի է իր հիմնադրած Կոմունիստական պարտիայի պայքարից ու հաղթանակներից։ Լենինի պարտիական ու պետական ողջ գործունեության, նրա տեսական վիթխարի ժառանգության մեջ դրսևորվել են Կոմունիստական պարտիայի ուժը և գործերը, նրա իմաստունությունը, այն լավագույնը, վեհը, հերոսականը, ինչ ունի մեր քաջարի բանվոր դասակարգը, մեր ժողովուրդը, ինչ մշակել է մարդկային միտքը հազարամյակների ընթացքում։

Իր ամբողջ կյանքի ընթացքում Վ. Ի. Լենինը սերտորեն կապված էր ժողովրդի՝ բանվորների և գյուղացիների հետ, նա ոչ միայն սովորեցնում էր մասսաներին, այլև ինքը սովորում էր ժողովրդից, բոլոր կարևոր հարցերում խորհրդակցում էր աշխատավորական լայն մասսաների ներկայացուցիչների հետ, հաշվի առնում շարքային բանվորի, գյուղացու, կարմիրբանակայինի, գիտնականի կարծիքը, դրա մեջ տեսնելով ժողովրդական մասսաների ձգտումների, հույզերի, իղձերի արտահայտությունը։

Լենինը խորապես հավատում էր ժողովրդին, աշխատավոր մասսաների ռևոլյուցիոն էներգիային և ստեղծագործությանը, նա պահանջում էր անընդհատ ամրապնդել կապը ժողովրդի հետ, մասսաների հետ։

Բոլշևիկները, բանվորական մասսաները, ամբողջ աշխարհի աշխատավորները Լենինին գիտեին և գիտեն որպես պարտիայի հիմնադրի ու ղեկավարի, պրոլետարիատի առաջնորդի, ռևոլյուցիոն տակտիկայի ու ստրատեգիայի հանճարեղ վարպետի, մեծագույն թեորետիկի։

«Ավելի սրտացավ մարդու մեզանից ոչ ոք չի տեսել,— Լենինի մասին գրել է Ս. Մ. Կիրովը։— Նա բազմակողմանի էր։ Նա գտնում էր մեզնից յուրաքանչյուրի սրտի բանալին։ Կա՞ր պարտիայի մի այնպիսի անդամ, որ չիմանար նրա սրտացավ լինելու մասին... Նա միշտ մատչելի էր և շփվող։ Բանվորների և գյուղացիների հետ նա երկար ժամանակ կարող էր խոսել մանրուքների մասին։ Նույնիսկ մեր թշնամիները հիացած էին Իլյիչով»։

Լենինի բնավորության ամենահիանալի գծերից մեկն էլ նրա ներքին բացարձակ ազնվությունը և ճշմարտացիությունն էր։ Լենինը արտակարգ արագ կերպով ընդունում էր իր թույլ տված սխալները, քննադատում և ուղղում դրանք։ Լենինը համեստ էր և անշահախնդիր, կենսախինդ և պարզ՝ մարդկանց, աշխատանքի ընկերների նկատմամբ. սիրում էր երեխաներին, բնությունը, երաժշտությունը, այն ամենը, ինչ զարգացնում և ազնվացնում է մարդուն։

Զրույցների և դիսկուսիաների ժամանակ Վլադիմիր Իլյիչը ձգտում էր ստուգել և ճշտել իր դատողությունները և հետևությունները։ Նա հաճախակի հարցնում էր. «Իսկ ի՞նչ եք դուք մտածում այս մասին, համաձա՞յն եք, թե ոչ», «Ինչպիսի՞ն է ձեր կարծիքը»։ Լենինի այս գիծը հատկապես վառ երևում էր պարտիական աշխատանքի և պետական շինարարության պրակտիկ հարցերի լուծման ժամանակ։ Նման դեպքերում նա ձգտում էր օգտագործել յուրաքանչյուր գիտակ մարդու ուժերն ու գիտելիքները և միշտ հաշվի էր նստում իր աշխատանքային ընկերների կարծիքի հետ։

Յուրաքանչյուր պատասխանատու աշխատող լինելով Լենինի մոտ, զգում էր, որ ինքը ներգրավվում է ակտիվ համապետական աշխատանքի, որ նրանցից յուրաքանչյուրին Լենինը կարող է լսել, յուրաքանչյուրը կարող էր նրանից իր հարցերի պատասխաններն

ստանալ։ Եվ ամենագլխավորն այն է, որ ով աշխատում էր Լենինի հետ, կատարում էր նրա հանձնարարությունները, զգում էր, որ ինքը պետքական մարդ է, որ իր փորձն ու գիտելիքները չեն անտեսվում։ Խոսք գնար թեորիայի հարցերի, թե նեղ պրակտիկ գործերի մասին, միևնույն է, Լենինը երբեք ցույց չէր տա իր առավելությունը, նա վարվում էր որպես հավասարը հավասարի հետ։

Պոետ Ալեքսանդր Ժարովը կոմերիտմիության III համագումարի մասին իր հիշողությունների մեջ գրում էր, որ երբ Լենինին հարցրին. «Ընկեր Լենին, ասացեք, իսկ ինչո՞ւ գյուղում չկա անիվի յուղ», դահլիճում շատերը ծիծաղեցին, այդ հարցը նաիվ և ոչ տեղին գտնելով, իսկ Վլադիմիր Իլյիչը ասաց, որ դա շատ կարևոր հարց է... Կոմունիստը պետք է կարողանա պատասխանել գյուղում անիվի յուղի, մեխերի, նավթի, լուցկու բացակայության մասին հարցերին։ Ավելին։ Կոմունիստը պարտավոր է այս կամ այն կերպ օգնել մեր արտադրության կազմակերպմանը, այդ թվում և անիվի յուղի արտադրությանը։ Տիրապետել թեորիային, չկտրվելով կյանքից, ժողովրդի կարիքներից։ Ահա թե ինչպիսին պետք է լինի կոմունիստը։



Ժողովրդի հետ Լենինի կապի ձևերից մեկն էլ նամակներն էին, որ հսկայական թվով ուղարկվում էին նրան, և որոնք նա սիրում էր կարդալ։ Նա ասում էր.

«Չէ՞ որ դրանք իսկական մարդկային փաստաթղթեր են։ Այդպիսի բաներ ես չեմ լսի ոչ մի զեկուցման մեջ»։

Վ. Ի. Լենինը խիստ կերպով հետևում էր, որպեսզի տեղերում ճիշտ կենսագործվեն սովետական օրենքները։ Մի շարք աշխատողների կողմից թույլ տրված անօրինականությունների կապակցությամբ մի կարմիրբանակայինի ուղարկած նամակի վերաբերյալ Լենինը իր քարտուղարին գրել է.

«Արագ կերպով փնտրեցեք նամակի հեղինակին, ընդունեք, հանգստացրեք, ասացեք, որ ես հիվանդ եմ, բայց նրա գործը տեղից կշարժվի»։

Յուրաքանչյուր անհատ մարդու թիկունքում Լենինը տեսնում էր մասսաներին, իսկ մասսաների մեջ՝ պարտիայի և պետության ուժը։ Ահա թե ինչու նա հատուկ ուշադրություն էր նվիրում աշխատավորների հետ պարտիայի կապերի ընդլայնմանն ու ամրապնդմանը, նրանց ստեղծագործական նախաձեռնության պաշտպանմանը։ Վլադիմիր Իլյիչին կարելի էր տեսնել Բուտիրսկի խու-

տորի դաշտում, որտեղ էլեկտրական գութան էր փորձարկվում, նավթի հանույթի մեքենայացման գծով ինժեներների հետ զրուցելիս, երկաթուղայինների շաբաթօրյակներում, մանկապարտեզում և ամեն տեղ։

Մեր երկրի բանվոր դասակարգը, բոլոր աշխատավորները բարձր էին գնահատում Լենինի վստահությունը, անսահմանորեն հավատում և սիրում էին նրան։ Լենինի անունն աշխատավորների ամենից սիրված անունն էր. «Մեր Իլյիչը»— այսպես էր անվանում ժողովուրդը նրան։

Հասարակական կյանքի զարգացումը, մեր ապրած յուրաքանչյուր օրը նորանոր հաղթանակներ են բերում լենինիզմին, նրա դրոշի շուրջը միլիոնավոր մարդիկ են համախմբվում հողագնդի բոլոր անկյուններում։

Լենինի գաղափարները բոցավառ փարոսի նման լուսավորում են ժողովուրդների պատմության քառուղիները։ Լենինը կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի բյուրեղյա խիղճն է, նա ապրում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի փառապանծ գործերում, լենինիզմի դրոշի ներքո կոմունիզմի ուղիով վստահորեն ընթացող Սովետական Հայրենիքի նորանոր հաջողություններում։ Մենք ամեն օր ապրում և շընչում ենք Լենինի հետ, թևավորվում նրա լուսավոր գաղափարներով, լսում նրա իմաստուն ամեն մի խոսքը, գնում նրա պայծառ ուղիով։

Լենինի գաղափարները հզոր ազդեցություն են գործում համաշխարհային պատմության ամբողջ ընթացքի վրա։ Նրանք ապրում ու հաղթանակում են սոցիալիզմ կառուցող ժողովրդական դեմոկրատիայի երկըրների աշխատավորների սխրանքներում, եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների գործերում, ժողովուրդների միջև խաղաղություն ու բարեկամություն հաստատելու, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար ծավալված օրեցօր աճող և ամրապնդվող միջազգային շարժման մեջ։

Լենինի անունը անսահմանորեն թանկ է հողագնդի բոլոր ազնիվ մարդկանց համար։ Լենինի գործերը, նրա ուսմունքը անմահ են։

Լենինի դրոշով, Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ առա՜ջ դեպի կոմունիզմի հաղթանակը։

## Ինչ կարդալ Վ. Ի. Լենինի հիշատակի օրվա առթիվ

ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆ, *համառոտ կենսագրություն, Հայպետհրատ, 1955։*

ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ, *ժողովածու երկու հատորով, Հայպետհրատ, 1958։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), առանձին բրոշյուր։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ղեկավար և կազմակերպող ուժն է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում, ՍՄԿՊ *XXI համագումարում տրված զեկուցումից, Հայպետհրատ, 1959, էջ 158—173։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Երկրի էլեկտրիֆիկացման լենինյան գաղափարների կենսագործումը կոմունիզմի հաղթանակի ճշմարիտ ուղին է, *ճառ էներգետիկ շինարարության համամիութենական խորհրդակցությունում, Հայպետհրատ, 1959։*



Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի քառասուն տարին, *տպագրված առանձին բրոշյուրով (Հայպետհրատ, 1957) և «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Վոլգայի Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան հիդրոէլեկտրակայանի շինարարների միտինգում, *Հայպետհրատ, 1959։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Ճառ Կաշինո գյուղում Վ. Ի. Լենինի արձանի հանդիսավոր բացման առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 22-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Աշխարհն առանց զենքի, աշխարհն առանց պատերազմների, *Հայպետհրատ, 1961։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Լենինյան ազգային քաղաքականության մեծ հաղթանակը, *Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում արտասանած ճառից, Հայպետհրատ, 1961, էջ 5—16։*

Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ— Հանուն Սովետների իշխանության, *հոդված լենինյան գաղափարների հաղթանակի մասին, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1960 թվականի 3-րդ համարում։*

Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ— Լենինի մասին. *Հայպետհրատ, 1960։*

Օ. Վ. ԿՈՒՈՒՍԻՆԵՆ—Լենինի գաղափարների կենսագործումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի ապրիլի 23-ի համարում։*

Լենինը կուլտուրայի և արվեստի մասին, *Հայպետհրատ, 1958։*

Պարտիային։ Բոլոր աշխատավորներին. *ՌԿ(բ)Պ Կենտկոմի դիմումը, տպագրված ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, էջ 1027—1030, Թարգմանված ռուսերենի յոթերորդ հրատարակությունից, Հայպետհրատ, 1954։*

Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ռևոլյուցիոն գործունեության սկիզբը, *տպագրված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմության գրքում, Հայպետհրատ, 1959, էջ 26—37։*

—·—



# Ի ՊԱՏԻՎ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

**(Թվեր և փաստեր)**

*Նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը աշխատանքային նոր վերելք է առաջ բերել մեր ռեսպուբլիկայի գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, սովխոզներում և ամենուրեք։ Ռեսպուբլիկայի աշխատավորները ձգտում են բարձր ցուցանիշներով կատարել սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները և արժանավայել գործերով դիմավորել ՍՄԿՊ XXII համագումարը։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։*

*Ստանձնած պարտավորությունները դարձյալ փայլուն ցուցանիշներով կատարեց Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը։ Այս տարվա առաջին եռամսյակի արտադրական պլանը կատարված է ժամկետից շուտ, մարտի 27-ին և խնայված է 330 տոննա հիմնական հումք։*

*Նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալվում է Երևանի Ալյումինի գործարանում։ Այստեղ անընդհատ մեքենայացվում*

են աշխատատար պրոցեսները, որի շնորհիվ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը և հեշտանում բանվորների աշխատանքը։ Արդեն հիմնական ցեխում կիրառվում են լույսային և ձայնային ազդանշաններ, որոնք տալիս են էլեկտրաէներգիայի մեծ խնայողություն։ Մեքենայացված է անոդների բարձրացումն ու իջեցումը։

Ղափանի շրջանի պղնձահանքային կոմբինատի Նոր Բարաբաթում հանքի կոլեկտիվը մարտի 20-ին կատարել է հանքաքարի պոկման և արդյունահանման առաջին եռամսյակի պլանը։ Այժմ կոլեկտիվը պայքարում է երկրորդ եռամսյակի պլանը ժամկետից 15 օր շուտ կատարելու համար։

Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանում միայն անցած երկու ամսում արտադրության մեջ ներդրվել է 65 նորարարական առաջարկություն։

Ռեսպուբլիկայում անցյալ տարի կառուցվեցին և շահագործման հանձնվեցին 12 նոր գործարան, գործող ձեռնարկություններում 15 նոր ցեխ։ Այդ նույն ժամանակաշրջանում աշխատավորներն ստացան 233,9 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, 23 դպրոց և կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներ։

Այս տարի միայն Երևանում կկառուցվի և շահագործման կհանձնվի 141 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, կամ ավելի քան 4.500 բնա-



կարան, 4 գիշերօթիկ ու 5 հանրակրթական դպրոց և 5 մանկապարտեզ։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորներն այս տարի կստանան 9.260 բնակարան։

Երևանի կահույքի ֆաբրիկայի կոլեկտիվը աչքի ընկնող հաջողությունների է հասել արտադրության մեջ նոր տեխնիկայի արմատավորման գործում։ Դրա շնորհիվ վերջին երկու տարում ֆաբրիկայի արտադրական կարողությունը ավելացել է մեկ ու կես անգամ։ Մի շարք ցեխերում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 2—4 անգամ։

Անվանի կարբիդագործ Կ. Մկրտչյանը, որը աշխատում է Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանում, այս տարվա առաջին եռամսյակում ավելի քան 80 տոննա արտապլանային արտադրանք է տվել երկրին և տնտեսել է ավելի քան 40 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Երևանի շոգեքարշային դեպոյի ավագ մեքենավար Ա. Պողոսյանը սիստեմատիկաբար գերակատարում է ժողովրդատնտեսական բեռների տեղափոխման պլանները։ Նա պլանով նախատեսված 1400 տոննայի փոխարեն տեղափոխում է 1600—1700 տոննա բեռ։

Նախահամագումարյան մրցությունը բուռն թափով ծավալվում է Երևանի Վ. Ի. Լենինի անվան մե-

տաքսի կոմբինատում։ Այստեղ գործվածքային № 1 ցեխի ջուլհակներ Հասմիկ Ներսիսյանը, Հայկուշ Հարությունյանը և շատ ուրիշներ իրենց արտադրական նորման կատարում են 123—130 տոկոսով։

Երևանի կաշվի վերամշակման և կոշիկի արտադրական կոմբինատի կոլեկտիվը ժամկետից 15 օր շուտ կատարեց առաջին եռամսյակի պլանը։ Երկուս ու կես ամսում տնտեսվել է 16 հազար դեցիմետր կոշտ ու փափուկ կաշի, որից կարելի է պատրաստել հազար զույգ կոշկեղեն։

Արտադրական պլանները միշտ գերակատարելու վճռականությամբ են համակված Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի ձուլողներ Գ. Հակոբյանը, Պ. Մնեղյանը, Ս. Մարգարյանը և շատ ուրիշներ, որոնք օրվա պլանները կատարում են 130—150 տոկոսով։

Այս տարվա առաջին եռամսյակի պլանները բարձր ցուցանիշներով է կատարել Երևանի լայն սպառման ապրանքների ֆաբրիկայի կոլեկտիվը։ Բացի արտադրական պլանները գերակատարելուց ֆաբրիկայում յուրացվել է սեղանի նոր տեսակի սփռոցների, մահճակալի նոր տեսակի ծածկոցների և մանկական կոշկեղենի արտադրության տեխնոլոգիան։

Ղափանի պղնձահանքային կոմբինատի կոլեկտիվը ժամկետից 8 օր շուտ կատարեց այս տարվա ա-



ռաջին եռամսյակի պլանը։ Ղափանի հանքագործները, մրցման հրավիրելով Ալավերդու մետալուրգներին, պարտավորվել են համախառն արտադրանքի տարեկան պլանը կատարել 105 տոկոսով, մոլիբդենի կոնցենտրատինը՝ 103, պղնձի կոնցենտրատինը՝ 102 տոկոսով։

Երևանի «Երկոշ» ֆաբրիկայի կոլեկտիվը գերակատարել է եռամսյա պլանը։ Ֆաբրիկայի բանվորները մինչև մարտի 15-ը երկրին տվել են 4000 ռուբլու արտապլանային արտադրանք, զգալի չափով ավելացել է առաջին տեսակի կոշկեղենի թողարկումը։

Նշանակալից հաջողություններով են դիմավորում ՍՄԿԿ XXII համագումարը Շահումյանի, Շամշադինի, Նոյեմբերյանի, Աշտարակի և Աղինի անասնաբույծները։ Շահումյանի շրջանը ռեսպուբլիկայի անասնաբույծների սոցիալիստական մրցության մեջ գրավել է երկրորդ տեղը։ Նա մսի արտադրության տարեկան սոցիալիստական պարտավորությունները կատարել է 100,7, կաթինը՝ 113,3, բրդինը՝ 115,2 և ձվինը՝ 107,5 տոկոսով։

Ախուրյանի շրջանի կոլտնտեսականները պարտավորվել են անցյալ տարվա 12-ի փոխարեն այս տարի ամեն մի հեկտարից ստանալ 15 ցենտներ հացահատիկ և անցյալ տարվա 175 հազար հեկտարի փոխարեն կատարել 185 հազար հեկտար հացահատիկային կուլտուրաների ցանք։

Եղեգնաձորի շրջանի Մալիշկայի կոլտնտեսությունը գերակատարել է պետությանը միս վաճառելու կիսամյա պլանը, ձվի վաճառքի 1961 թվականի պլանը կատարված է 93 տոկոսով և 100 ցենտներով գերակատարված է կաթի վաճառքի այս տարվա առաջին եռամսյակի պլանը։

Նույն շրջանի կոլտնտեսականները պարտավորվել են այս տարի արտադրել 12.500 ցենտներ միս, 36.000 ցենտներ կաթ, 950 ցենտներ բուրդ, մեկ միլիոն ձու, 32.000 ցենտներ խաղող, 7.000 ցենտներ պտուղ և այլն։

Այս տարի Լենինականի սարքաշինական գործարանը երկրին կտա մեկ միլիոն ռուբլու ստուգող ու չափող զանազան սարքեր։

Նախահամագումարյան մրցության այս օրերին աշխատանքային նոր հաջողություն ձեռք բերեց Լենինականի դարբնոցա-մամլիչային սարքավորումների գործարանի կոլեկտիվը։ Օրերս գործարանում լրիվ կարողությամբ շահագործման հանձնվեց մեխանիկական նոր տեղամասը։

Ի պատիվ ՍՄԿԿ XXII համագումարի Լենինականի գուլպայի ֆաբրիկայում ծավալվում է լավագույն գործերի համար վեցամսյա կոմերիտական արշավ։ Կոմերիտականները և բոլոր երիտասարդները



ձգտում են տարին ավարտել հոկտեմբերի 17-ին, ՍՄԿԿ XXII համագումարի բացման օրը։

Լենինականի հացի № 1 գործարանի բանվորուհի Գոհար Գասպարյանը նախահամագումարյան մրցության առաջավոր է։ Նա մեկի փոխարեն օրական գրեթե մեկ ու կես նորմա է կատարում։

Լենինականի կոնդուկտորական ռեզերվի կոլեկտիվը ժամանակին և անկորուստ տեղ է հասցնում ժողովրդա-տնտեսական բեռները։ Անցած երկուս ու կես ամսում մրցության առաջավոր կոնդուկտորները ուղեկցել են 700 ծանրաքարշ գնացք և արտապլանային կարգով տեղափոխել են 116 հազար 400 տոննա բեռ։

Ղափանի № 1—2 հանքի կոլեկտիվը պատվով է կատարում ստանձնած պարտավորությունները։ Հանքում մեկ բանվորի աշխատանքի արտադրողականությունը, անցյալ տարվա համեմատությամբ, բարձրացել է 4 տոկոսով, իսկ հանքաքարի ինքնարժեքը իջել է 1,2 տոկոսով։ Հանքի կոլեկտիվը միշտ գերակատարում է պղնձաքարի հանույթի պլանը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի պատվին կազմակերպված սոցիալիստական մրցությունը ռեսպուբլիկայում բուռն թափով ծավալվում է։ Աշխատավորները ամեն միջոց գործ են դնում նոր և պանծալի գործերով դիմավորելու ՍՄԿԿ XXII համագումարը։

—•—

ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆՈՒՄ

## ԵՍ ԻՄ ԽՈՍՔԸ ԿԱՏԱՐԵՑԻ

*Մեր կոլտնտեսության խոզաբուծական ֆերման Ջափարիձե գյուղից 30 կիլոմետր հեռավորության վրա է գտնվում։ Խոզանոցը կիսաբաց ձև ունի, կառուցված է ջրանցքի ափին։ Հենց այդտեղ էլ, դրանից ոչ հեռու, կոլտնտեսության վարչությունը ինձ համար կառուցել է մի հարմարավետ աղյուսե տուն։*

*Մեր շրջանում հաշվել են, որ անցյալ տարի միայն ես այնքան խոզ եմ բտել, որքան մի քանի տարի առաջ երկրին հանձնել է ողջ Ցիտելցկարայի շրջանը։*

*Ես 30 տարեկան եմ։ Ըստ ընտանեկան տրադիցիայի վեց տարեկանից հորս հետ արածացնում էի կոլտնտեսության ոչխարները։ Իսկ ահա թե ինչպես դարձա խոզապահ։ 1955 թվականին էր։ Կոմերիտական ժողովում ինչ-որ խոսք բացվեց այն մասին, թե կոլտնտեսությունում խոզաբուծությունը ետ է մնում և կոմերիտականների պարտքն*



*է օգնել, որ շտկվի այդ վիճակը։ Այդ ժամանակ էլ մի քանի կոմերիտականներ, որոնց թվում նաև ես, որոշեցինք դառնալ խոզապահներ։ Ճիշտն ասած, սկզբից երիտասարդները քիչ էին օգնում խոզաբուծական ֆերմային։ Թեև կոլտնտեսությունում խոզի մսի արտադրությունն ավելացավ, բայց նա շատ թանկ էր նստում։*

*Մի երկու տարի առաջ խոզաբուծության զարգացման գործում որոշակի բեկում նրկատվեց։ Երկրի առաջավոր տնտեսությունների օրինակով կոլտնտեսության վարչությունը կառուցեց հատուկ բտման խոզանոց։ Այստեղ տեղադրվեցին մի քանի ավտոմատ կերպով կերակրող և ջրող հարմարանքներ։ Սակայն, թե այդ հարմարանքների կոնստրուկցիայի անհաջողության, թե ինչ-որ այլ պատճառով, մենք ցանկալի արդյունքների չհասանք։ Ֆերմայում առաջվա նման աշխատում էր 8 մարդ, իսկ խոզի մսի յուրաքանչյուր ցենտների ինքնարժեքը, նույնիսկ դեռ 1959 թվականին, հասնում էր 750 ռուբլու։*

*Բայց ահա երկրով մեկ տարածվեց մի լուր՝ Յարոսլավ Չիժը մենակ պարտավորվել է բտել հազար խոզ։ Չիժի նախաձեռնությունը ինձ հուզեց։ Մի քանի օր շարունակ ես խորհում, կշռադատում էի և վեր-*

ջապես գնացի կոլտնտեսության վարչության նախագահ Միկո Կոկիաշվիլու մոտ։ Մենք երկար զրուցեցինք, կանչեցինք զոոտեխնիկին, դարբնին, գցեցինք-վերցրեցինք, հաշվեցինք և որոշեցինք, որ ես պետք է գնամ Ջիժի մոտ հյուր, սովորելու։ Երբ վերադարձա տուն, անմիջապես իմ ուսուցչին մրցության հրավիրեցի և պարտավորվեցի մեկ տարվա ընթացքում աճեցնել ու բտել 1.000 խոզ, յուրաքանչյուրը հասցնելով 90 կիլոգրամի։

Ես գործի անցա լրջորեն, ինչպես որ պետք էր։ Երեք ամիսը մեկ ստանում էի 250—260 գլուխ խոճկոր։ Յուրաքանչյուր խոճկորի քաշը հետագայում ինձ հաջողվում էր հասցնել 90—100 կիլոգրամի, և կոլտնտեսությունը դրանք վաճառում էր մսամթերումների դիմաց։

Աշխատում էի մենակ, բայց ինձ մենակ չէի զգում։ Հարևան շրջաններից ինձ մոտ խոզաբույծներ էին գալիս, հետաքրքրվում էին իմ փորձով, խորհուրդներ խնդրում։ Եվ բոլորն էլ հարցնում էին, թե ինչպես եմ գլուխ բերում այդ աշխատանքը։

Իսկ աշխատանքը, թվում է թե մի առանձին բան չէ. օրը երկու անգամ շլանգով լվանալ հարթակները, մի երեք անգամ կեր



լցնել կերամանները, իսկ ջուրը խոզերն իրենք են խմում։ Բայց իրականում հարկ եղավ, որ ես շատ դժվարություններ հաղթահարեմ։ Օրինակ, առավոտյան, երբ կերամանները դատարկ են, խոզերն արտակարգ աղմկոտ են կամ, ասենք, մոտ է խոզերին զբոսանքի դուրս բերելու ժամը։

Նա, ով լսի, թե այդ պահին ինչ աղմուկ են բարձրացնում խոզերը, իսկ իմ խնամքի տակ կա 300 գլուխ խոզ, կհասկանա, թե դա ինչ աշխատանք է։ Ոչ, կատակ բան չէ, երբ մի մարդը արածացնում է 300 խոզ, նրանց առվում լողացնում և նորից քշում խոզանոց։

Պատահում է, որ կերը ժամանակին չի հասնում, լինում են նաև այլ խոչընդոտներ։

Հասկանալի է, որ շատ կարևոր է ինքնարժեքի հարցը։ Առաջ ֆերմայում աշխատում էր 8 մարդ, և յուրաքանչյուրը տարեկան ստանում էր մոտ 700 աշխօր։ Այժմ ես մենակ եմ աշխատում և միայն ինձ տալիս են մոտ 1.000 աշխօր։ Կերը արդեն պատրաստում են ոչ թե ձեռքով, այլ կոլտնտեսության ալրաղացում։ Որպես կանաչ կեր խոզերի համար ցանել ենք առվույտ ու եգիպտացորեն։ Երբ խոզերին բաց ենք թողնում դուրս, նրանք շրջում են դաշտում և

հենց իրենք էլ հավաքում են «բերքը»։ Ահա և ամբողջ գաղտնիքը։

Վերջերս մեր ռեսպուբլիկական «Զարյա Վոստոկա» թերթը տպեց Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին ուղղված իմ նամակը։ Այդ նամակում ես հայտնում էի, որ իմ խոսքը պատվով կատարեցի՝ «բտեցի 1.300 խոզ։ Մսի մեկ ցենտները նստել է 200 ռուբ. 50 կոպ., այսինքն, երեք անգամ էժան, քան 1959 թվականին»։

Ապագայի իմ ծրագրերը մեծ են։ Հաստատապես որոշել եմ հետագայում նույնպես իջեցնել խոզի մսի ինքնարժեքը։ Յոթնամյակի երրորդ տարում պարտավորվել եմ բտել 1.600 խոզ։

ԴԱՎԻԹ ՍԵՊԻԱՇՎԻԼԻ

Վրացական ՍՍՌ Ցիտելկարայի շրջանի Զափարիձե գյուղի կոլտնտեսության խոզապահ



Նշումների համար

Նշումների համար

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



---

## СОДЕРЖАНИЕ

Стр.



---


Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Բ. Հ. ԼԱԼԱԲԵԿՅԱՆ—Վ. Ի. Լենինը և սովետական կարգերի հաստատումն ու ամրապնդումն Անդրկովկասում, 339 էջ, գինը 50 կ.։

Ե. Տ. ՑԱԳԵԵՎ— Ինչպես է գիտությունն օգնում մարդուն, 183 էջ, գինը 22 կ.։

Լ. Վ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ— Հայ կանանց սխրագործությունները Հայրենական Մեծ պատերազմում, 90 էջ, գինը 8 կ.։

Կ. Ա. ԴԱՆԻԵԼՅԱՆ—Հայ մեմուարային գրականության պատմություն, 227 էջ, 59 կ.։

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 7 1961 г.

ՎՖ 02044 Պատվեր 192 Տպաքանակ 9.192

Հանձնված է արտադրության 31/III 1961 թ.։
Ստորագրված է տպագրության 5/IV 1961 թ.։

Խմբագրության հասցեն—Երևան, ՀԿԳ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը՝ 8 կոպ.